# ԲԱՂՐՋՈՒԿ ԵՒ ԱՂՋԿԱՏԱԿ

Բ.

*Բաղրջուկը, որու հոմանիշ կը տրուի աղջկատակ բառը, բաջուկ կը կոչուի մեր շրջանին մէջ, ըստ բիւթանական հնչումին՝ բաՋուկ, — այսպէս գրուելուն համար է, ապահովաբար, որ Խաչա-տուր քահ. Տէր — Վարդանեանի բառացանկին մէջ, իբրեւ Օվաճըղի բառ, տպագրական սխալով մը, դարձեր է բաՉուկ, բոլորովին տարբեր բոյսի մը անուն*(1) *:*

*Աղջկատակ բառը չի գործածուիր մեր շրջանին մէջ (Բիւթանիա) :*

*Այս բառին ծնունդը կը հասնի մինչեւ ԺԳ. դար : Փորձենք գտնել իր ծագումը :*

*Հայկազեան բառգիրքը կազմողները կը կարծեն թէ աղջկատակ բառին արմատն է եղինձ, — արդարեւ եղինձ, որ կը նշանակէ* բռըրկան օթու — ortie, *կը գրուի նաեւ աղինձ կամ աղէնձ, (զանց կ'առնեմ գրչագրական ուրիշ ձեւեր) : Արդ, մեր ժողովուրդը, ինչպէս խօսակցութեան մը ընթացքին ինծի կ'ըսէր Զիթունի,* իկ կամ ուկ *մասնիկով կը շինէ բուսանուններ, որոնք ցոյց կուտան բոյսի մը վայրի տեսակը,— օրինակ, կոտեմ = ընտանի տեսակը, իսկ կոտմուկ = վայրի տեսակը :*

*Այժմ առնենք աղինձը, որ ընտանի տեսակն է, — վայրի տեսակը կ'ըլլայ աղձուկ (ունինք նաեւ աղէձիկ) :*

*« Տակ » կը նշանակէ բոյսի մը արմատը՝ ընդհանրապէս, (նաեւ՝ ճակնդեղ) : Արդ, աղէձկիտակ կամ աղձկատակ կը նշանակէ եղինձի արմատ : Բայց աղձկատակը, փոխանակ նշանակելու եղինձի արմատ, դարձեր է բաղրջուկ բոյսին հոմանիշ,— զարմանալի չէ՞ :*

*Բնագրօսիկ այս ստուգաբանութիւնը կ'ընդունիմ իբրեւ միայն... զբօսանք : Իմ քիթս կ'ըսէ թէ աղջկատակ, կամ աղձկատակ, կամ աղձկուտատ, բոլոր այս բառերը Հայու հոտ չունին :*

*Ունինք «Բառք Գաղիանոսի» անունով բժշկական ձեռագիր մը, որու ծագումը կը տանին ոմանք մինչեւ Մխիթար Հերացի, իբրեւ Թարգմանութիւն Գաղիանոսի գործէն քաղուած բառերու : Ես տարբեր կարծիք ունիմ այդ մասին, բայց կարեւորը առիկա չէ հիմա : Այդ ձեռագիրը, եւ անոր կողքին՝ բազմաթիւ ուրիշ ձեռագիրներ, որոնք «հէքիմարան» կը կոչուին, ոչ միայն ողողած են մեր լեզուն օտար բառերով, այլեւ աղաւաղած են մեր կարգ մը բառերը : Ով որ տեսած է Երեմիա վարդապետի բառարանը, որ « Բառք Գաղիանոսի» չարքէն կարճ յաւելուած մըն ալ ունի, կրնայ գաղափար մը կազմել այն աղաւաղումներուն եւ աղճատումներուն մասին, զորս գործած են ընդօրինակողները, «հէքիմ» կոչուած քահանաները, բժշկութիւն եւ համայնագիտութիւն ծախող մեր հին վարժապետները, (Երեմիայի բառարանին մասին վերաքննական աշխատանք մը կը պատրաստէ, Հայաստանի մէջ, մեր երիտասարդ բանասէրներէն՝ Արարատ Ղարիբեան) :*

*Ահա այսպիսի համբակ մարդիկ, որոնք չեն գիտեր ուրիշ օտար լեզու մը, երբեմն կը հայացնեն կամ իբրեւ հայերէն բառ կը ծախեն... Թուրքերէն բառ մը, ճոխացնելու համար անշուշտ մեր շփոթութեանց շտեմարանը : Օրինակ, ունինք* տէրադօթիկ *բառը, որ կը նշանակէ սամիթ՝ ըստ Ամատունի վարդապետին բառարանին* (Բառ ու Բան,— *ճիշդ է*), *կոտեմ՝ ըստ Թէոդիկի* (Ամենուն Տարեցոյցը, 1909, *էջ* 346,— *սխալ է*) *: Վանեցիները կը կարծեն թէ այս բառը կազմուած է* տէր *եւ* աղօթք *բառերէն,— սխալ է :*

*Տեսէք թէ ո՛ւրկէ կուգայ «տէրադօթիկ» բառը :*

*Պօղոս դպիրի ոտանաւոր բառարանին մէջ կը գտնեմ.*

Տարադ օթի՝ *սամիթ կերլի,*
Տէյիրմի *բառն է բոլորչի :*

*Այստեղ «կերլի» բառը հոմանիշ չէ : Ածական, կը նշանակէ ուտելի, ինչպէս կը ճշդուի քննելով նոյն բառին գործածութեանը այլ տեղեր, (բառարանին մէջ գործածուած է չորս անգամ) :*

*Ահա այս* տարադ օթին *Վանի մէջ դարձեր է « տէրադօթիկ», իսկ Նոր Բայազիտի մէջ... « տէրողորմիկ» :*

*Թուրքերը ունի՞ն* տարադ օթի *բառը : Ծանօթ է* թէրէ *Թուրքերէն բառը, որ կը նշանակէ կոտեմ, ինչպէս կը վկայէ Պօղոս դպիր.*

Թէճնիրէ *սան՝ սաւ կաթսայ.*
Թէրէ *բուսոյն կոտիմ սաս :*

*Մեր բառարանները կը շփոթեն կոտեմ ու սամիթ բառերուն Թուրքերէն համապատասխանները, (օրինակ՝ Պետրոս Չէքիի բառարանը) : Թուրքերն ալ յաճախ չեն գիտեր Թուրքերէն այդ երկու բառերուն տարբերութիւնը, (վերջերս, Պոլսոյ մէջ, Տոքթ. Սայիպ Ղրայ հատոր մը հրատարակեց բժշկական բոյսերու մասին, ուր կ'երեւայ այդ կոտոշաւոր սխալը) :*

Թէրէ *Թուրքերէն կը նշանակէ կոտեմ կամ կոտիմ, Ֆրանսերէն* cresson,— *երբեմն* թէրէ օթի *ալ կ'ըսեն, որ գիտական գրականութեան մէջ գործածական չէ՝ շփոթութեան տեղի չտալու համար անշուշտ : Թուրքերը ունին նաեւ* տէրէ օթի, *որ կը նշանակէ սամիթ, Ֆրանսերէն* aneth,— *այս է որ դարձեր է* տարադ օթի *եւ յետոյ՝ «տէրադօթիկ» :*

*(Արմաշի մէջ, մենք սանտր* (2) *կ'անուանենք սամիթին մէկ տեսակը*(3), — *Թուրքերն ալ ունին* տարադ օթի *բառ մը* (4), *որուն «Գամուսը Թիւրքին» հոմանիշ կուտայ* մուրեանէ *բառը, բայց յետոյ կը մոռնայ բացատրել այդ հոմանիշը, ու կ'երեւայ թէ Քէլէկեան Խանն ալ « Գամուսը Թիւրքի»էն առեր է այդ հոմանիշը, բայց նոյնպէս մոռցեր է յետոյ... բացատրել զայն) :*

*Ուրեմն, Թուրքերէն բառ մը հայացեր է ու դարձեր... տէրողորմիկ,— տեղն է ըսել՝ Տէրը ողորմի բոլոր անոնց, որոնք այսպիսի սիւննէթլի բառերը պիտի ճօդեն ու վերադարձնեն իրենց տէրոջ :*

*Նոյն ձեւով հայացեր է «աղջկատակ» բառը :*

*Երկու տունկեր կան, որոնք կը պատկանին տարբեր ընտանիքներու, բայց իրարու կը նմանին իրենց բժշկական յատկութիւններով :*

*Կմշտրուկ (Նորայր Բիւզանդացի կը կարդայ կըմըշտրուկ) կը կոչուի տունկ մը, որուն Ֆրանսերէն անունները կը վկայեն թէ բժշկական ի՛նչ յատկութիւն ունի,—* caquenlit, foirolle *(զանց կ'առնեմ ուրիշ նման խատուտիկ հոմանիշներ, որովհետեւ այս երկուքը բաւական են բացատրելու ամէն բան) :Ամիրտովլաթ«սպիտակ տուղտ» կ'անուանէ այս տունկը, որ արաբերէն կը կոչուի* հալպուպ *: Ծանօթ է շփոթութիւնը, զոր մեր հին բժշկարանները ցոյց կուտան տուղտ ու բաղրջուկ բոյսերուն մասին,— եւ ահա նոր շփոթութեամբ մը՝ տուղտը կը նմանցնեն* հալպուպին, *որուն Թուրքերէն անունն է* աղճա օթի, *նաեւ* սուլթան օթի *: Երբ կը տեսնենք բժշկարանի մը մէջ, որ* սուլթան օթի *կ'անուանուի բաղրջուկը, յետոյ* աղճա օթի, *դժուար չէ ընդունիլ որ բաղրջուկը կրնայ կոչուիլ նաեւ «աղջկատակ»՝ հայացուելով* աղճա օթին, *ինչպէս պէտք է հետեւցնել ձեռագրական կարգ մը ձեւերէ,— օրինակ՝* աղճկուտատ *:*

*Զուգադիպութի՞ւն արդեօք , — « Հալպուպը » որ* mercuriale *կը կոչուի Ֆրանսերէն, ծանօթ է նաեւ «վայրի եղինձ» անունով եւ մեր աղձկատակը կը յիշեցնէ :*

*Ուրեմն, եզրակացութիւն,—* աղջկատակը *բաղրջուկը չէ իր ծագումով :*

*Այս բոյսերուն հայերէն ու Ֆրանսերէն անուններուն եւ հոմանիշներուն, ինչպէս նաեւ անոնց բժշկական յատկութիւններուն եւ ժողովրդական աւանդութիւններուն մասին՝ կարդալ ՀԱՅ – ԲՈՅԺի մէջ :*

Տ. ՆԱՐԴՈՒՆԻ

---

*ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ*.— (1) Խաչատուր Քահանայի բառամթերքին մէջ,— «Արեւել. Մամուլ», 1897 —, բազուկին դէմ գրուած է թուրքերէն *էպէ կէօմէճի*, (նոյն պարբերականին մէջ Յովհ. Գազանճեան ունի քննադատական մը այս բառերուն մասին) : Դժբախտաբար, Աճառեան, իր « Գաւառական Բառարանին» մէջ, որ անյապաղ վերաքննութեան կը կարօտի՝ ըմբռստացուցիչ սրխալներու եւ թափթփածութեան պատճառով, — ժամանակին՝ Յովհ. Թումանեանն ալ կը գրէր այդ սխալներուն մասին, «Գործ» ամսագրին մէջ , — բաջուկ բառին ութ տարբեր նշանակութեանց կարգին՝ տեղ տուած է Տէր–Վարդանեան քահանայի տպագրական սխալին, ընդունելով բաջուկը ...բազուկ :

(2) Ֆրանսացիները սանտր (Աստղկան) կը կոչեն **cerfeuil**ը, որ տարբեր բոյս է :

(3) Սամիթին վայրի տեսակն է այդ «սանտր» կոչուածը,— գրական լեզուի մէջ ծանօթ է հոռոմ սամիթ կամ շումրայ անունով (**bacile** կամ **fenouil**) :

(4) Թուրքերուն այս *տարադ* (= սանտր) *օթին* պէտք չէ շփոթել *տէրէ օթի*ին հետ : Պօղոս դպիր աղաւաղումի մը հետեւանքով կը գրէ նմանօրէն, բայց չի շփոթեր իմաստը : Գամուսը Թիւրքին կը յիշատակէ *տարադ օթի*ն եւ հոմանիշ կուտայ *մուրեանէ* բառը, որ չի գտնուիր Գամուսը Թիւրքիի մէջ,— ես զայն գտայ նշանաւոր Գէորգ դպիր Պալաթցիի բառարանին մէջ, « ժանգ» նշանակութեամբ : Կիրակոսեան քահանայի պարսկերէն – հայերէն բառարանն ալ, որ հրատարակուած է 1933ին, կը հաստատէ այդ նշանակութիւնը :

(5) Հայաստանի բանասէրները, համաձայն նոր գտնուած ձեռագիրներու վկայութեանց, կը հաւաստեն թէ Գրիգոր կը կոչուի Ամասիացի այն մեծանուն հայ բժիշկը, որ մինչեւ այժմ ծանօթ էր Ամիրտովլաթ անունով միայն :

ՕՐՈՒԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ ՀԵՏ

## Երբ Ստալին աքսորական էր

Նիքոլա Իվանովիչ Քարկանով կը գրէ անգլ. թերթի մը մէջ.—

*Անձնապէս կը ճանչնայի Եոզէֆ Վիսարիոնովիչ Ջուղաշվիլին որ աւելի լաւ ծանօթ է իբրեւ Ստալին — այսօրուան ամէնէն ահարկու մարդը աշխարհի :*

*Սակայն այն Ստալինը — երիտասարդ Ստալինը զոր ես ճանչցայ, արիւնծարաւ հակառակորդ մը չէր : Երբեք չտեսայ իր գէշութիւնը որ եւ է մէկուն հանդէպ՝ այն հինգ տարիներուն զոր մենք անցուցինք միասին Սիպերիոյ մէջ :*

*Ստալինը կը ճանչնամ 1913էն ի վեր, երբ բոլշեւիկ պետերու եւ Դումայի անդամներուն հետ ձերբակալուեցայ եւ Սիպերիա աքսորուեցայ :*

*Թուրխանսքիի մէջ (հիւսիսային Սիպերիա) էր որ հանդիպեցայ Ստալինի եւ արդելափակուեցայ անոր հետ :*

*Ցար Նիքոլա Բ.ի քաղաքական բանտարկեալներուն հետ, ես ալ ճանչցայ Ստալինը : Ան ալ կ'ապէր կեանքը մեր աքսորավայրին , որ բառին իսկական առումով բանտ մը չէր : Նոյնիսկ կարելի չէր կեդրոնացման կայան կոչել բառին արդիական առումով : Պէտք եղած ամէն ազատութիւն ունէինք :Մեր վրայ հսկող ոստիկան չկար եւ ոչ ալ զնտանի մէջ էինք :*

*Թերեւս անհաւատալի թուի, սակայն ճշմարտութիւն է որ կառավարութիւնը ամսական մեզի* 15 *րուպլի կուտար, ինչ որ բաւական լաւ գումար մըն էր հանգիստ կեանք մը ապրելու, միսն ու հացն ալ աժան ըլլալով :*

*Հիւսիսային Սիպերոյ մէջ, աքսորի օրերուն, Ստալին արդեօք ապագայ առաջնորդի որեւէ նշան ցոյց չէ՞ր տար, կը հարցնեն բարեկամներս :*

*Կեդրոնացման կայանին մէջ Ստալին խոստմնալից առաջնորդի որեւէ նշան ցոյց չէր տար : Ճիշդ է որ երբեմն կը յայտնաբերէր կազմակերպական կարողութիւն, սակայն անզգալի էր, եւ ոչ ոք լրջօրէն չէր առներ երբ ան ապագայ ծրագիրներու մասին կը խօսէր : Եթէ Թուրխանսքիի իմ բանտակիցներս ողջ են տակաւին, կրնան հաստատել թէ մեզմէ ոչ մէկը կրնար խորհիլ որ Ստալին անգութ բռնապետ մը պիտի դառնար :*

*Ես կը յիշեմ զինք իբրեւ բարի մէկը որ ընկերներու միջեւ ծագած վէճերը կը հարթէր :*

*Աքսորավայրին միօրինակութիւնը ընդմիջելու համար, Ստալին եւ իր մտերիմները մօտակայ լիճը ձուկ որսալու կ'երթային : Մէկէ աւելի անգամներ առիթ ունեցայ անոր հետ երթալու : Անկեղծօրէն ըսեմ թէ հաճոյք կը զգայի իր ընկերութենէն :*

*Ստալինի յատկանշական գիծերէն մէկն էր իր լռակեցութիւնը աքսորավայրին մէջ : Շատ անգամ կը տեսնէի իր խոկալը :*

*Պատահաբար թերթերուն մէջ կը տեսնեմ որ Ստալինի նկարները ծաղկախտի հետքերը ցոյց չեն տար դէմքին վրայ :*

*Ինչո՞ւ փախայ Ռուսիայէն, երբ համայնավար կուսակցութեան անդամ էի :*

*Թէեւ նոր կառավարութեան մէջ պատասխանատու դիրք մը ունէի , փախայ, որովհետեւ չէի կրնար հանդուրժել այն սոսկալի, զանգուածային սպանութեանց որ յաջորդեցին 1917ի յեղափոխութեան :*

*Երբ արիւնծարաւ եւ իշխանատենչ Լենինականները տեսան որ փոքրամասնութեան կուսակցութենէն չատեր փախան, իրենց բարկութիւնը թափեցին անոնց ազգականներուն վրայ :*

*Բոլոր ծնողքս եւ ազգականներս, թիւով* 40, *մէկ միւսին ետեւէն հաշուեյարդարի ենթարկուեցան :*

70 *տարեկան եմ, օրերս համրուած են : Ասկէ զատ ինչու այլեւս ապրիմ : Բոլոր սիրելիներս զարնուած եւ հնձուած են համայնավարներու կողմէ : Մեծ մխիթարութիւն պիտի ըլլայ գրքիս հրատարակութիւնը :*

★

### ԵՈՒԿՈՍԼԱՒԻՈՅ ԱՐԴԻԱՑՈՒՄԸ

*« Ն. Ե. Հէրըլտ»*ի թղթակիցը կը գրէ Պելկրատէն.—

*Մարաջախտ Թիթոյի շինարարութեան առաջին ծրագիրներէն մէկն է արդիացնել Եուկոսլաւիան : Առաջին առթիւ շինել կուտայ Մոնթենեկրոյի համար նոր մայրաքաղաք մը որ պիտի կոչուի Թիթոկրատ :*

*Թէեւ Թիթոյի եւ Կոմինֆորմի պայքարի ընթացքին կարգ մը ճարտարագործական ձեռնարկներ խափանեցան, սակայն բնակարաններու շինութեան, հաւաքական ագարակներու, վարչական գրասենեակներու շինարարութիւններ չընդհատեցան, բան մը որ նշմարելի է ամբողջ երկրին մէջ :*

*Թիթօն իր գործակիցներով զօրաշարժի ենթարկեց բազմաթիւ աշխատող ձեռքեր :*

*Մոնթէնէկրոյի նախկին մայրաքաղաքը՝ Չէ –*

